ԳՈՆԻԱՅԷՆ Տրապիզոն գացող հանրակառք մը, անիւի խանգարումի մը հետեւանքով, փոսի մը մէջ ինկած է։ Ճամբորդներէն 33 հոգի մեռած եւ 18 հոգի վիրաւորուած են։

ՔԱՂԱՔԻ ՄԷՋ (Քոնկօ) Լուլուա եւ Գալուպա ցեղախումբերը վիրար կը խեղդեն, սոսկալի կռիւներու ընթացքին։ Գեւթերու համաձայն 300 մեռեալ կայ։ Բովանդակ Քոնկոյի մէջ, կացութիւնը շատ ծանր է՝ անզօրծութիւն, սով, համաճարակ։ Համբրշուշա կոչ կ'ընէ Գեւթերուն.— Քաշուեցէք Քաթանկայէն։

## ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Կը տօնուի Նիսի մէջ, նախաձեռնութեամբ Նիսի Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ խումբին, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին, Օգոստ. 7, ամբողջ օրը, Փլաթօ տիւ Մոն Պարոն, Սիթ Անշանթէօրի տեսարժան եւ ծառախիտ պարտէզներուն մէջ։

Անձրեւի պարագային, գեղեցիկ սրահ։

Կը նախագահէ ընկ. ՇԱՀԱՆ ՋՕՏԵԱՆ, կը բանախօսէ Վ. ՄԻՍԹԻՔ։

Գեղարուեստական բաժին։

ՃՇԴՈՒՄ.— Սողոմոն Թէհլիրեան սրբազան նուիրատուութիւնը Գրիգոր Թեւանեանի մահուան առթիւ եղած է Տէր եւ Տիկին Պօյաճեանի կողմէ։

## ՆՈՒԷՐ

Փոքրիկներ Տիգրան Ջրբաշեանի եւ Քնարիկ Մոմճեանի մկրտութեան առթիւ Տէր եւ Տիկին Աւլէն Փափազեան 100 Ն. Ֆրանք կը նուիրեն Դպրոցասէր Տիկնանց վարժարանին։ (Ստանալ «Յառաջ»էն)։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ամիսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշտօնեաներուն համար՝ որոնց կարգաւ բացակայութիւնը զգալի կերպով կը դժուարացնէ մնացողներուն առօրեայ աշխատանքը։

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդներէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հաճին դիմել որեւէ թղթատարական գրասենեակ։

Ընթացիկ պարզ եւ ձրի գործողութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տըրամադրելի՝ հետեւեալ խորագիրով դեղին թուղթը.—

Formulaire No 755-A — ORDRE DE REEXPEDITION (Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժանորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Եդուարդ Պասմաճեան եւ զաւակը, Օրիորդ Իրիս Պասմաճեան, Տէր եւ Տիկին Սարգիս Պասմաճեան, Տոքթոր եւ Տիկին Արթօ Արզարեան եւ զաւակները, Օորիորդ Արփինէ Սարգիսեան, այրի Տիկին Հրաչ Սարգիսեան եւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց հօր, մեծ-հօր եւ ազգականին՝

ՓԱՐԹԱՄ ՊԱՍՄԱՃԵԱՆԻ

մահուան առթիւ։

×

Պ. Կարապետ Բաղոսեան եւ զաւակները՝ Ցակոբ եւ Արթօ, Տէր եւ Տիկին Յովհաննէս Զրրբճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պետրոս Բաղոսեան եւ զաւակները, այրի Տիկին Աղաւնի Բաղոսեան եւ զաւակները, այրի Տիկին Վարդանոյշ Բաղոսեան եւ զաւակները եւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով շնորհակալութիւն յայտնեցին իրենց կնոջ, մօր, մեծ-մօր եւ ազգականին՝

ՀԱՃԻ ՏՈՒՐԻԿ ԲԱՂՈՍԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ։

×

Այրի Տիկին Գրիգոր Թեւանեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով մասնակցեցան իրենց սուգին, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր՝

ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆԻ

զառնակսկիծ մահուան առթիւ։

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1960 – 1961ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ պրըվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով։

Դիմել 1, Պուլվ. տիւ Նօր, Լը Րէնսի, Հեռ. 927.01.72։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խընամակալութիւնը պէտք ունի ուսանողուհի մը, որ ստացած ըլլայ ֆրանսական երկրորդական կրթութիւն եւ կարենայ դասաւանդել վարժարանին մէջ։ Բնակութիւն եւ սնունդ ապահովուած են։

Մանրամասնութեան համար դիմել տընօրէնութեան։ 1, Պուլվ. տիւ Նօր, Լը Րէնսի, Հեռ. 927-01,72։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 20.30ին, դպրոցի սրահին մէջ։

Կարեւոր օրակարգ, զեկուցում պատգամաւորի, ներկայ վարչութեան երկու տարուան գործունէութեան նիւթական ու բարոյական հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## ՆՈՅԵՄԲԵՐ 13, ԿԷՍՕՐԷ ԵՏՔ

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏ

Ազգային Բարերարին Մահուան դարադարձ

եւ

Վարժարանին Վերաբացման երեսնամեակ

Հանդիսաւոր Տօնակատարութիւն

Մանրամասնութիւնները յաջորդով։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժօրժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Բ. խումբը կը մեկնի Օգոստոս չորսին, արձանագրուած պզտիկներու ծնողքներէն անոնք որ դեռ չեն լրացուցած վերջնական պայմանները, պէտք է շուտով ներկայանան 5 Րիւ Մէյրան, հեռ. Թրիտէն 27 – 35։

×

Բ. խումբի մեկնումի հաւաքատեղի Կառ տը Լիոն, 4 Օգոստոս ժամը 22ին, դուրսի «Թուռ տը լ'Օռլօժ»ին տակը։

Ա. խումբի վերադարձ հինգ Օգոստոս, առաւօտեան ժամը չորսուկէսին Կառ տը Լիոն։

×

Լիոնի Բ. խումբը կը մեկնի Օգոստոս հինգին, պզտիկներու հաւաքավայր Պերաշի կայարանը, մուտքի ժամացոյցին տակը ժամը 16ին, ըլլալ ճշդապահ։



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Պէյֆոնթէնի մանուկներու օգափոխութեան կայանի յանձնաժողովը Մոըէզէն կ՚ընէ հետեւեալ նուէրները․

LINO DI-LÉNA
300 Ն․ Ֆ․ Մշ․ Տան Թէքէլիըեան սրահին
300 Ն․ Ֆ․ Կապ․ Խաչին

J. GONTERO et Cie
150 Ն․ Ֆ․ Մշ․ Տան Թէքէլիըեան սրահին
150 Ն․ Ֆ․ Կապ․ Խաչին

GUSTAVE PAGET
150 Ն․ Ֆ․ Մշ․ Տան Թէքէլիըեան սրահին
150 Ն․ Ֆ․ Կապ․ Խաչին

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Համախմբելոց․ Սիութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը խոր ցաւակցութիւն կը յայտնէ հայրենակից Գ․ Ղուկաս Պետրոսեանի դառնաղէտ մահուան առթիւ, եւ մխիթարութիւն կը մաղթէ հանգուցեալին այրիին, զաւակներուն եւ Գույումճեան Օժկանեան ընտանեկան պարագաներուն։*

## ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*Կը տօնուի Նիսի մէջ, նախաձեռնութեամբ Նիսի Հ․ Յ․ Դ․ Գէորգ Զավուշ խումբին, հովանաւորութեամբ Հ․ Յ․ Դ․ Մարսէյլի Շրջ․ Կոմիտէին, Օգոստ․ 7, ամբողջ օրը,* Փլաթօ տիւ Մոն Պորօն, Սիթ Անշան-թէօրի *տեսարժան եւ ծառախիտ պարտէզներուն մէջ։*

*Անձրեւի պարագային, գեղեցիկ սրահ։*
*Կը նախագահէ ընկ․ ՇԱՀԱՆ ՋՕՏԵԱՆ, կը բանախօսէ Վ․ ՄԽԻԹԱՐ։*
*Գեղարուեստական բաժին։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը իր մրցանակաբաշխութեան հանդէսի ընթացքին, շնորհակալութեամբ ստացած է ի նպաստ իր դպրոցին եղած հետեւեալ նուէրները․—*

*Ազգ․ Եկեղեց․ Միութիւն 7000 Հ․ Ֆ․, Մարտիկներու Միութիւն 2000, Տէր եւ Տիկին Յ․ Թիւթիւնճեան 4000, Պ․ Թոպեր Թէքս (Վալանսէն) 3400, Տէր եւ Տիկին Մ․ Կիւմիւշեան, Տէր եւ Տիկ․ Զատիկեան 2000ական, Տէր եւ Տիկ․ Տ․ Ալիքեան, Տէր եւ Տիկ․ Ռ․ Քիւրքճեան 3000ական, Տէր եւ Տիկ․ Գոստիկեան 2000, Պ․ Խ․ Աւագեան եւ Օրիորդ Ս․ Սիսլեան 1500ական, Պ․ Միշէլ Նալպանտեան, փոքրիկն Արզար Խաչատուրեան, Պ․ Յ․ Ոսկեան, Տէր եւ Տիկ․ Կարմիրեան, Տէր եւ Տիկին Յ․ Աւաեան, Տէր եւ Տիկ․ Խ․ Արապեան, Պ․ Աբրահամեան, Տէր եւ Տիկ․ Գութնուեան, Տէր եւ Տիկ․ Փիլաֆճեան, Տէր եւ Տիկ․ Միքայէլեան, Տէր եւ Տիկ․ Անտոնեան, Տէր եւ Տիկ․ Ղարիպեան, Տէր եւ Տիկ․ Գունտուրաճեան, Պ․ Գոչկարեան, Քրիսթինէ եւ Ժաքլին Սահակեան, Տէր եւ Տիկ․ Սինանեան, Տէր եւ Տիկ․ Վ․ Բաբախեան, Տէր եւ Տիկ․ Եմէնէճեան, Տէր եւ Տիկ․ Գ․ Թիւֆէնճեան, Տէր եւ Տիկ․ Մարաշլեան 1000ական Հին Ֆրանք։ Տիկին Յ․ Գույումճեան, Պ․ Քէսաթէքեան, Պ․ Խաչատուրեան, Պ․ Բ․ Ցակոբեան, Տէր եւ Տիկ․ Սիմոնեան, Տէր եւ Տիկ․ Ուզունեան 500ական։ Տէր եւ Տիկին Իւլրիշ, Տէր եւ Տիկ․ Տէր-Մարկոսեան, Տէր եւ Տիկ․ Մառանճեան, Տիկ․ Սվազլեան, Տիկ․ Հապիլեան, Պ․ Լիւթէնժէ 1000ական Հին Ֆրանք։*

*Գումար 16․400 Հ․ Ֆ․*



## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ամիսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշտօնեաներուն համար՝ որոնց կարգաւ բացակայութիւնը զգալի կերպով կը դժուարացնէ մնացողներուն առօրեայ աշխատանքը։

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդներէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հաճին դիմել որեւէ թղթատարական գրասենեակ։

Ընթացիկ պարզ եւ ձրի գործողութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տրամադրելի՝ հետեւեալ խորագիրով դեղին թուղթը․—

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION
(Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժանորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը։

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

*Երեւանէն Աշոտ Ալեքսան Բաննահեան կը փնտռէ իր հօրեղբայրը, Հայկազ Միքայէլ Բաննահեան, որ Ֆրանսա եկած է* 1925–1926 *թուականներուն։*

*Պուքրէշէն Սիլվիա Էքսէրճեան կը փընտռէ իր հօրաքոյր Նիկեար Էքսէրճեան, ամուսնացած Մարգարտիչի Սաղեանի հետ։*

*Իրենց մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի իմացնել Փարիզի Եկեղեցւոյ դիւանատան՝* 15 Ռիւ Ժան Կուժոն, Փարիզ 8րդ։

*Արտասահմանի մամուլէն կը խնդրուի արտատպել այս յայտարարութիւնը։*



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1960 – 1961*ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան։*

*Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ* պրըվէի *եւ* պաքալորէայի *քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով։*

*Դիմել* 1, Պուլվ․ տիւ Նօր, Լը Րէնսի, Հեռ․ 927․01․72։

## Կ՚ՈՒԶՈՒԻ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խընամակալութիւնը պէտք ունի ուսանողուհի մը, որ ստացած ըլլայ Ֆրանսական երկրորդական կրթութիւն եւ կարենայ դասաւանդել վարժարանին մէջ։ Բնակութիւն եւ սնունդ ապահովուած են։*

*Մանրամասնութեան համար դիմել տնօրէնութեան ։* 1, Պուլվ․ տիւ Նօր, Լը Րէնսի, Հեռ․ 927–01․72։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ․ ԽԱՉԻ Կրընոպլի մասնաճիւղի ընդհ․ ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը* 20․30*ին, դպրոցի սրահին մէջ։*

*Կարեւոր օրակարգ, զեկուցում պատգամաւորի, ներկայ վարչութեան երկու տարուան գործունէութեան նիւթական ու բարոյական հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։*



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՎԱԼԱՆՍ․ Հ․ Յ․ Դ․ Շրջ․ Կոմիտէի ընդհ․ ժողովը այս Շաբաթ իրիկուան ժամը 8․30ին, Ահարոնեան ակումբը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։*

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

*ՎԱԼԱՆՍ․— Անձրեւի պատճառաւ Հերոսներու Օրը յետաձգուած էր այս կիրակի միեւնոյն տեղը, նոյն ժամուն։*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՆՈՅԵՄԲԵՐ 13, ԿԷՍՕՐԷ ԵՏՔ**

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏ**

Ազգային Բարերարին Մահուան դարադարձ

եւ

Վարժարանին Վերաբացման երեսնամեակ

Հանդիսաւոր Տօնակատարութիւն

*Մանրամասնութիւնները յաջորդով։*

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

*Բ․ խումբի մեկնումի հաւաքատեղի Կառ տը Լիոն, 4 Օգոստոս ժամը 22ին, դուրսի «Թուռ տը լ՚Օռլօժ»ին տակը։*

*Ա․ խումբի վերադարձ հինգ Օգոստոս, առաւօտեան ժամը չորսուկէսին Կառ տը Լիոն։*

×

*Լիոնի Բ․ խումբը կը մեկնի Օգոստոս հինգին, պզտիկներու հաւաքավայր Բերաշի կայարանը, մուտքի ժամացոյցին տակը ժամը 16ին, ըլլալ ճշդապահ։*

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն․ Ֆր․ | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն․ Ֆր․ | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն․ Ֆր․ | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն․ Ֆր․ | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն․ Ֆր․ | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն․ Ֆր․ | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն․ Ֆր․ | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն․ Ֆր․ | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն․ Ֆր․ | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ ոչանակուած ծաւալով ազդերու համար են։
Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։
Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Մարսէյլ, Խանասորի տօնակատարու- թեան ընթացքին Հ. Յ. Դ. Քրիստափոր Ենթակոմիտէի կազմակերպած վիճակա- հանութեան հասոյթը 300 Ն. Փ.։*

*Հ. Յ. Դ. Սէն-Ժեռմէի «Հայաստան» Ենթ.էն (ընկ. Ժ. Խսկիճեանի զաւկին՝ Գրիգորի արկածով մահուան առթիւ) 20 Ն.Փ.*

*Գումար* 320 Ն.Փ.
*Նախորդ գումար* 8376 Ն.Փ.

*Ընդհանուր գումար* 8696 Ն.Փ.

*Նուէրները ղրկել հետեւեալ հասցէին՝*
Maison de la Culture Arménienne
51, Rue Mr.-le-Prince, PARIS (6e)
Chéque Postal : PARIS 5.460-11

## ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆԸ
### *ԼԻՈՆԻ ՄԷՋ*

*Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարա- րէ թէ Ս. Աստուածածնայ տօնին առթիւ, Օգոստ. 14ի Կիրակին հանդիսաւոր պա- տարագ տեղի պիտի ունենայ Լիոնի եկե- ղեցւոյ մէջ։ Ցաւարտ պատարագի, մա- տաղօրհնութիւն եւ աւանդական խաղողի օրհնութիւնը պիտի կատարուի։*

*Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջաններու բարեպաշտ Հայութիւնը ներկայ ըլլալ հոգեպարար արարողութեանց։*

*Այն բարեպաշտ ազգայինները որոնք կը փափաքին մասնակցիլ մատաղայինի, հաճին իրենց նուէրները արձանագրել ե- կեղեցւոյ բանկալը։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Լիոնի Եկեղեցաշէն Տիկն. Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Օր. Ռընէ Նը- շանեանէ 50 Ն.Փ., Տիկ. Հայկանոյշ Սի- մոնեանէ 5, Տէր եւ Տիկ. Տ. Տօնապետ- եանէ իրենց զաւկին ամուսնութեան առ- թիւ 60, Տէր և Տիկ. Շաւարշ Խաչատուր- եանէ իրենց զաւկին ամուսնութեան առ- թիւ 50 Ն. Փ.։*

## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն արձակուրդի ա- միսները, արձակուրդի շրջան է նաեւ թերթին առաքումով զբաղող մեր պաշ- տօնեաներուն համար՝ որոնց կարգաւ բացակայութիւնը զգալի կերպով կը դժ- ուարացնէ մնացողներուն առօրեայ աշ- խատանքը ։

Կը խնդրենք մեր ազնիւ բաժանորդնե- րէն որ, արձակուրդի առժամեայ հասցէի փոփոխութեան համար, նախընտրաբար հաճին դիմել որեւէ թղթատարական գը- րասենեակ ։

Ընթացիկ պարզ եւ ձրի գործո- ղութիւն մըն է, որուն գործադրութեան համար պէտք է լեցնել տեղւոյն վրայ տը- րամադրելի՝ հետեւեալ խորագիրով դե- ղին թուղթը .—

Formulaire No 755-A — ORDRE DE RÉEXPÉDITION
(Changement d'adresse temporaire)

Կանխաւ շնորհակալութիւն մեր բաժա- նորդներուն որ պիտի ուզեն այդ ձեւով դիւրացնել մեր գործը ։

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Գօմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է այրի Տի- կին Հայկանոյշ Երամեանէ 10 Ն. Փրանք իր ամուսնոյն մահուան տարելիցին առի- թով։ Տիկին Շահլամեանէ եւ Տիկին Ան- տուրեանէ 10ական Ն. Փ.։ Նոյնպէս ողբ. Տիկին Սրբուհի Մարգարեանի թաղման առթիւ՝ փոխան ծաղկեպսակի ստացած է.— Տիկին Գօղոսեանէ, Պ. Համբարձում Աւետիսեանէ եւ Տէր եւ Տիկին Նշան Տա- տայեանէ 10ական Ն. Փրանք։*

×

*ԼԻՈՆ — Ազգ. Միութիւնը շնորհակա- լութեամբ ստացած է 200 Ն.Փ. Պ. Գէորգ Թօփազալեան - Նիկողոսեանէ ի նպաստ եկեղեցւոյ շինութեան։*

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### *ՍԵՒՐ*

—

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐ- ՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ։

*ԲԱՑՈՒԱԾ են նաեւ* Պաքալօրէայի *երկ- րորդ մասին երկու նոր դասարանները.—*

*Ա)* Տարրական Ճափագիտութիւն

Mathématiques Elémentaires

*Բ)* Փորձառական Գիտութիւններ

Sciences Expérimentales

*Պայմաններուն համար դիմել՝*

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

## *ԱՒԱՆԴԱԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ*

*Էքս-լէ-Պէնի շրջաններու մեր հայ- րենակիցներուն փափաքին գոհացում տա- լու համար, այս տարի կրկին կը կատար- ուի դաշտահանդէս՝ հայկական սրճարա- նի եւ շրջակայ ծառախիտ դաշտերու վը- րայ, հոսուն պաղ ջուրերուն մօտ։*

*Օթոքարի մեկնակէտ՝* Էքս-լէ-Պէնի *կա- յարանի դիմաց եւ* փարքին *քովէն ժամը 9էն սկսեալ։ 10,30ին պատարագ Ս. Աստ- ուածածնայ տօնակատարութեամբ և խա- ղողօրհնութեան մատուցմամբ վրդ. Օշին Նիկոլեանի։ Խմբական հացկերոյթէ վերջ ճոխ գեղարուեստական բաժին, ղեկավա- րութեամբ Տիկ. Պարղեւուհի Պետրոս- եանի։*

*Բանախօսութիւններ ներկաներու կողմէ եւ ճոխ վիճակահանութիւն։ Հասոյթը պիտի յատկացուի Սրբազան Հօր կողմէ պատրաստուելու վրայ եղող դպրոցական- ներու յատուկ կրօնագիրքի մը եւ մշա- կութային հայագիտական դասագիրքերու հրատարակութեան՝ հայերէն եւ ֆրանսե- րէն լեզուներով։ Այս գիրքերէն ձրիօրէն պիտի օգտուին ամբողջ Ֆրանսայի եւ Եւ- րոպայի հինգշաբթիի եւ կիրակնօրեայ դպրոցներու յաջողակ աշակերտները։*

*Կը խնդրուի բոլոր Հայութենէն օժան- դակել այս խիստ կարեւոր եւ ազգապահ- պան ձեռնարկին, դիմելով կեդրոն Նամա- կով կամ անձամբ, Փարիզի մայր եկե- ղեցւոյ դիւանպետ Պ. Ս. Գարակէօզեանի եւ կամ Օգոստ. 1էն մինչեւ 24 Օգոստ.* Օթէլ տը լա Կրօթ (Սավուա), *Ա. Բամ- պուքճեանի։*



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*Տիկին Մայիամ Արշալուսեանի յիշա- տակին, Պ. Լուծվիկ Քաչքէժանեան կը նուիրէ 5 Ն. Փ. «Յառաջ»ի եւ 5 Ն Փ Սողոմոն Թէհլիրեան սրահին։*
*(Ստանալ «Յառաջ»էն)։*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Հանդիսաւոր տօնակատարութիւն Սար- պոնի մէջ, 9 Հոկտեմբեր1960, բոլոր դպ- րոցներու մասնակցութեամբ ։*

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

*ՎԱԼԱՆՍ.— Անձրեւի պատճառաւ Հե- րոսներու Օրը յետաձգուած էր այս կի- րակիի միեւնոյն տեղը, նոյն ժամուն։*

## ՆՈՒԷՐ

*Շաւիլի եկեղեցւոյ Վարչութիւնը շնոր- հակալութեամբ ստացած է Պ. Նշան Սեր- գոյեանէ 20 Ն. Փ. Գր. Փափազեանի ա- մուսնութեան առթիւ եւ Պ. Վարդ Եր- կանեանէ 30 Ն. Փ. ողբացեալ Վահան Փաստրմաճեանի ցաւալի մահուան առ- թիւ։*

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խը- նամակալութիւնը պէտք ունի ուսանողու- հի մը, որ ստացած ըլլայ ֆրանսական երկրորդական կրթութիւն եւ կարենայ դասաւանդել վարժարանին մէջ։ Բնակու- թիւն եւ սնունդ ապահովուած են ։*

*Մանրամասնութեան համար դիմել տը- նօրէնութեան ։* 1, Պուլվ. տիւ Նօր, Լը Ռէնսի, Հեռ. 927-01,72 ։

Այրի Տիկին Հայկ Մատոյեան, Տէր եւ Տիկին Անդրանիկ Մատոյեան եւ զաւակը՝ Վարդուհի, Յովհաննէս Մատոյեան, Տէր եւ Տիկին Յովհաննէս Նազարեան եւ զաւակը՝ Երուանդ, Պ. Մարգար Գալիկեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ոսկեան Մատոյեան եւ զաւակները (Հայաստան), Պ. Նշան Սարեան (Արժանթէօ) եւ ընտանեկան պարագաները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ-հօր, աներձագին եւ ազգականին՝

ՀԱՅԿ ՄԱՏՈՅԵԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ Օգոստ. 11ին, 59 տարեկանին, իր բնակարանը՝ 72, Ռիւ Ժան-Ժագ Ռուսօ (Քոլոմպ): Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր շաբաթ, Օգոստ. 13, ժամը 14ին, Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Անիէռի Նոր գերեզմանատունը, Ռիւ տը Լ'էկալիթէ:

Հաւաքուիլ գերեզմանատունը ժամը 15,45ին:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայ իլլալ այդ նկատի:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

| | Ն.Ֆ. |
|---|---|
| Նախորդ գումար | 8.696 |
| Տէր եւ Տիկ. Պ. Զպուքճեան | 10 |
| Կապ. Խաչի Պանթէօ-Քաշանի մ.ճիւղ | 30 |
| Կարապետ Բալըօեան | 50 |
| Տիկին Հայկանոյշ Երամեան | 10 |
| Տէր եւ Տիկին Մարտիրոս Պօյաճեան | 30 |
| Միսաք Սարգիսեան | 10 |
| Կարապետ Կարապետեան | 10 |
| Լինօ տի Լէնա | 300 |
| Կոնքըրօ | 150 |
| Փաժէս | 150 |
| Գաբրիէլ Վարդանեան | 20 |
| Ընդհ. գումար | 9.466 |



## ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆԸ
### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարարէ թէ Ս. Աստուածածնայ տօնին առթիւ, Օգոստ. 14ի Կիրակին հանդիսաւոր պատարագ տեղի պիտի ունենայ Լիոնի եկեղեցւոյ մէջ: Ցաւարտ պատարագի, մատաղօրհնութիւն եւ աւանդական խաղողի օրհնութիւնը պիտի կատարուի:

Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջաններու բարեպաշտ Հայութիւնը ներկայ ըլլալ հոգեզմայլ արարողութեանց:

Այն բարեպաշտ ազգայինները որոնք կը փափաքին մասնակցիլ մատաղագինի, հաճին իրենց նուէրները արձանագրել եկեղեցւոյ թանկալը:

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Կրօն. Ընկերակցութիւնը կը հաղորդէ թէ այս երկուշաբթի Աստուածածնայ տօնին առթիւ, առաջին անգամ ըլլալով պիտի պատարագէ Տէսինի համար Երուսաղէմի մէջ Տ. Սերովբէ Եպ. Մանուկեանի ձեռամբ ձեռնադրուած նորընծայ՝

### Տ. ՎԱՐԱԳ ՔՀՆՑ. ԱԻԱԳԵԱՆ

Արարողութիւններուն կը մասնակցին Լիոնէն Տ. Վռամշապուհ քհնյ. Ղարիպեան եւ Տ. Թորգոմ քհնյ. Փօսթէքեան, ինչպէս նաեւ Լիոնի եւ Տէսինի Դպրաց Դասը, ղեկավարութեամբ դպրապետ Պ. Գ. Մարտիրոսեանի:

Ժամերգութիւն.— 13 Օգոստ., շաբաթ երեկոյեան Լոյս Զուարթ եւ Եկեսցէ արարողութիւն ժամը 4ին: Ազի օրհնութիւն եւ մատաղի համար ոչխարներու զենում ժամը 5ին:

15 Օգոստ. երկուշաբթի, սկզբ. ժամերգութեանց առաւօտ ժամը 8ին: Պատարագ ժամը 10ին: Խաղողօրհնէք եւ հոգեհանգիստ ժամը 11,30ին:

×

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Ս. Աստուածածնի վերափոխման տօնին առթիւ, այս կիրակի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր պատարագ եւ պիտի կատարուի խաղողի աւանդական օրհնութիւնն ու բաշխումը: Հայրապետական Պատուիրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեան պիտի պատարագէ եւ քարոզէ:

Բշ. օր, 15 Օգոստ., Օր Մեռելոցի: Պատարագ ժամը 10ին:

Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալ:

×

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

Այս կիրակի տօն Վերափոխման Տիրամօր: Ժամը 10,30ին ձայնաւոր պատարագ եւ խաղողօրհնէք:

Պիտի պատարագէ եւ քարոզէ

ԳԵՐՊ. ԿԻՒՐԵՂ ԶՕՀՐԱՊԵԱՆ:

×

### ԳՕՄՈՆԻ ՄԷՋ

Գօմոնի Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ այս կիրակի Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ տեղի կ'ունենայ հանդիսաւոր պատարագ եւ խաղողօրհնէք: Իսկ յաջորդ օր, Յիշատակ Մեռելոց, թէ՛ պատարագ եւ թէ հոգեհանգիստ ազգիս ընդհանուր ննջեցելոց հոգւոց ի յիշատակ:

Կը հրաւիրուի Գօմոնի եւ Շրջ. հայ ժողովուրդը ներկայ ըլլալ սոյն արարողութեանց:

×

### ՍԷՆԹ-ԱՆԹՈՒԱՆԻ ՄԷՋ

Ս. Կարապետ եկեղեցւոյ մէջ (Գամբաներ-Ֆրէզ, Սէնթ Անթուան) տեղի պիտի ունենայ հանդիսաւոր պատարագ եւ աւանդական խաղողօրհնէք այս կիրակի:

Պիտի պատարագէ եւ քարոզէ Տէր Վարդան խաչակիր քհնյ. Ժամկոչեան:

Նոյն օրը ժամը 15ին, տեղւոյն Ֆրանսական եկեղեցւոյ կից սրահին մէջ տեղի պիտի ունենայ դպրոցական հանդէս մը, նախագահութեամբ Տէր Հօր: Պ. Թրադօշի խումբը պիտի ներկայացնէ զաւեշտ մը: Կը հրաւիրուի Թաղին եւ շրջանի Հայութիւնը:



### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի Վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս կիրակի հանդիսաւոր արարողութեամբ եւ երգչախումբին բազմաձայն երգեցողութեամբ կը կատարուին Ս. Աստուածածնի Վերափոխման տօնը եւ խաղողի օրհնութիւն:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Լիլիկ Սապունճեան եւ զաւակները՝ Լեւիկ, Էտիկ եւ Ասողիկ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս երկուշաբթի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՆԵՐՍԷՍ ՍԱՊՈՒՆՃԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ, ինչպէս նաեւ իրենց մօր եւ մեծ-մօր՝

ՑԻՒԴԻԹ ՍԱՊՈՒՆՃԵԱՆԻ

յիշատակին:

Ողբացեալներուն յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

նախարարը 50 տարեկան է։ Կիպրոս ունի 520.000 բնակիչ որուն 380.000ը՝ յոյն, 90 հազարը՝ թուրք։ Մայրաքաղաքը՝ Նիկոսիա ունի 45.000 բնակիչ։

ՄՈՍԿՈՒԱՅԻ եւ Փեքինի միջեւ տագնապ մը սկսած է ըստ եւրոպական շրջանակներուն։ Նկատելի է որ վերջերս Խ. Միութիւն կը վերադառնան բոլոր ռուս մասնագէտները եւ փորձագէտները որ Փեքին էին ղրկած վերջին տարիներու ընթացքին։ Տնտեսակարծութեան գլխաւոր պատճառը խաղաղ համակեցութեան զաղափարն է զոր Խրուշչեւ կը պաշտպանէ։ Չինացիներուն եւ Մաօ-Ցէ-Թունկի համար դրամատիրութիւն եւ համայնավարութիւն չեն կրնար խաղաղ համակեցութեամբ չարունակուիլ. պատերազմը ոչ միայն անխուսափելի չէ այլ նոյնիսկ բաղձալի, միշտ Չինացիներուն համար, եւ համայնավարութեան վերջնական յաղթանակը ապահով է։

ԼԱՈՍԻ կառավարութիւնը յանձնուեցաւ «վարդագոյն իշխանին», այսպէս կոչուած էր չէզոքութեան համար որուն բուն անունն է՝ Սուվաննա Փումա։ Նախկին աշակերտ Փարիզի Հանրօգուտ Շինութեանց դպրոցին եւ Կրընոպլի ելեկտրականութեան վարժարանին, իր ներկայութիւնը որոշ ապահովութիւն կու տայ արեւմտեաններուն։

ՊՐԱԶԱՎԻԼԻ մէջ, յանուն տը Կոլի, մշակութային նախարար՝ Անտրէ Մալրօ Քոնկոյի (նախկին ֆրանսական) անկախութեան առթիւ ըսաւ.— «Թող մեզի հանդիսատ ձգեն գաղթատիրութեան մասին խօսելով։ Այս երկրագունտին վրայ, զօր. տը Կոլ ուրիշ բան չէ եթէ ոչ ազատութեան ներկայութիւնը։ Ազատութենէն զատ, ուրիշ լեզու չունինք»։

---

## ԹՐՔԱՊԱՏՈՒՄ

### «ԲԱԶՄԱԹԻՒ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՎՆԱՍԱԿԱՐ ԵՆ» Կ'ԸՍԷ ԿԻՒՐՍԷԼ

Թուրքիոյ նախագահը՝ Կիւրսէլ ամերիկացի լրագրող մը ընդունելով, պատասխանած է անոր կարգ մը հարցումներուն։ Այս առթիւ Կիւրսէլ յայտարարած է թէ քաղաքական բազմաթիւ կուսակցութիւնները վնասակար կը նկատէ։ «Համոզուած չեմ որ Թուրքիոյ մէջ մեծաթիւ կուսակցութեանց հիմնումը օգտակար կ'ըլլայ։ Ինչպէս կարգ մը արեւմտեան պետութիւններու մէջ անհամար կուսակցութիւններ երկպառակութեան ծնունդ կու տան, չեմ բաղձար որ հոս ալ այդպէս ըլլայ։ Թուրքիոյ մէջ ընկերվարական կուսակցութիւն մը կայ։ Արտօնեցի անոր գործունէութիւնը։ Ընկերվարական կուսակցութիւն մը Թուրքիոյ համար վնասակար չէ։ Թերեւս շատ ալ օգտակար ըլլայ, այնքան ատեն որ յոռի նպատակներ չմտնեն գործին մէջ։ Ըստ իս, սակայն, այս կուսակցութիւնը առայժմ հրապարակ ելլելու համար պէտք եղածին չափ զօրաւոր չէ»։ Կիւրսէլի հարց տրուած է թէ ինք ալ Նասըրի չափ գործի գլուխ պիտի մնա՞յ։ «Ես Նասըր չեմ երբեք։ Մեր երկրին կացութիւնը անպայման անհրաժեշտ կը դարձնէր յեղափոխական շարժում մը։ Մենք ասիկա առանց արիւն թափելու ըլլալու հանեցինք։ Հիմա մեր ամբողջ բաղձանքն է ուղղամիտ ընտրութիւններով կառավարութիւնը քաղաքական վարչութեան փոխանցել եւ վերադառնալ բանակի մեր պարտականութեանց»։ Պատասխանելով լրագրողի ուրիշ հարցումներուն, Կիւրսէլ յայտնած է «Մենք ամէնուն հետ կ'ուզենք եղբայր ըլլալ։ Խաղաղութիւն երկրին մէջ, խաղաղութիւն տիեզերքի վրայ, այս է մեր նշանաբանը որմէ պիտի չշեղինք։ Նախորդները յանձնուած են թրքական օրէնքներուն եւ թըրքական արդարութեան։ Անոնց մասին վերջին խօսքն ալ թրքական օրէնքն ու արդարութիւնը պիտի արտասանէ»։ Այս տեսակցութենէն նաք, ամերիկացի լրագրողը յայտնած է թէ շատ գոհ մնացած է Կիւրսէլի հետ ունեցած խօսակցութենէն, ցարդ տեսակցած այլազան պետական մարդոց մէջ, այսքան համակրելի մարդու չէ հանդիպած եղեր, Ամերիկացին։

Հակառակ նախապէս տրուած լուրերուն, նախորդներու դատավարութիւնը Սեպտեմբեր 1էն առաջ չի կրնար սկսիլ։

---

## «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Լա Քոթ Սէնթ-Անտրէէն Գ. Նազարեան 10 Ն. Ֆրանք։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Կապոյտ Խաչի Գէլֆոնթէնի կայանի տնօրէնութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները.— Այրի Տիկ. Առաքելեանէ (Լիոն) 4 քիլօ կեռասի անուշ։ Գ. Ամիրայեանէ (Լիոն) 30 քիլօ դեղձ եւ տանձ։ Գ. Գամպէրեանէ 10 Ն. Ֆ.։ Գ. Գրիգորեանէ (Լիոն) 10 Ն. Ֆ.։ Այրի Տիկ. Արապեանէ (Տէսին) 5 քիլօ շաքար։ Գ. Սաթըճեանէ (Լիոն) 20 Ն. Ֆ.։ Տէր եւ Տիկ. Յովհ. Մանուկեանէ (Լիոն) 20 Ն. Ֆ.։ Տէր եւ Տիկ. Ս. Սիսլեանէ (Կրընոպլ) 30 Ն. Ֆ.։ Տէր եւ Տիկ. Գարաճեանէ (Փարիզ) մէկ քիլօ պոնպոն։ Տէր եւ Տիկ. Սապունճեանէ (Փարիզ) երեք քիլօ պոնպոն եւ շոքոլա։ Տէր եւ Տիկ. Սուրեանէ (Փարիզ) 20 Ն. Ֆ.։ Գ. Յակոբ Խաչատուրեանէ (Փարիզ) 50 Ն. Ֆ.։ Գ. Գէորգ Նիկողոսեանէ (Փարիզ) 20 Ն. Ֆ.։ Գ. Գ. Գրիգորեանէ եւ Գ. Լեւոն Մոմճեանէ (Փարիզ) 20ական Ն. Ֆրանք։









ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ։

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

Imprimerie Spéciale du journal « Haratch »







Գ. Ալեքսան Նուրեան եւ զաւակը՝ Վարուժան, Տէր եւ Տիկին Տիգրան Թորոսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Յովհաննէս Թորոսեան ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր, մեծ-մօր, խնամիին եւ ազգականին՝

## ԱՏՐԻՆԷ ՆՈՒՐԵԱՆԻ

(ծնեալ Խրտրչեան, Իրասոնցի)

կսկծալի մահը որ տեղի ունեցաւ Օգոստոս 18ին, 53 տարեկանին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս երեքշաբթի Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցիին մէջ։

ՈՉ ԾԱՂԻԿ, ՈՉ ԾԱՂԿԵՊՍԱԿ։

«ՅԱՌԱՋ».— Մեր ցաւակցութիւնները Նուրեան եւ Թորոսեան ընտանիքներուն։

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։





## ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

Լը ՓԷՔ

Բացուած են արձանագրութիւնները

**1960-1961**

Ուսումնական տարեշրջանին համար։

Տասը տարեկանէն սկսեալ երկրորդական վարժարանի որեւէ դասարանի ուսանող աշակերտ կ'ընդունուի։ Ուսման ծրագիրն է դասական ընթացք (Քուր քըլասիք)։

Որ եւ է լուսաբանութեան համար դիմել, գրաւոր կամ հեռաձայնով, վարժարանի տեսչութեան։

ECOLE APOSTOLIQUE
3, Ave. de Grandchamp, LE PECQ (S. et O.)
Tél. ; 963-0172

---

ԱՌՆՈՒՎԻԼԻ

ԱՆԱՐԱՏ ՅՂՈՒԹԵԱՆ ՔՈՅՐԵՐ

●

Իրենց հաստատութեան գիշերօթիկ աշակերտներու արձանագրութիւնը սկսած է։ Կ'ընդունին չորսէն 13 տարեկան աշակերտուհիներ, կը յաճախեն ֆրանսական դպրոցի դասընթացքներուն, եւ կը հետեւին հայերէնի ներքին ուսմունքներուն։

Մասնական տեղեկութիւններու համար դիմել տեսչութեան։

SŒURS ARMENIÈNNES
37, Ave. H. Barbusse - Arnouville les Gonesse (S & O)
Tel. :N° 179 à Gonesse

---

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1960 – 1961ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ պրըվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով։

Դիմել 1, Պուլվ. տիւ Նոր, Լը Րէնսի, Հեռ. 927.01.72։

ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Երեւանցի Երեմ Պապիկեանի ազգական՝ Արտաւազդ Աղաջանեան Երեւանի կամ Աշտարակի շրջանի Կարփի գիւղում բնակած։ Հօր անունը Վասիլ, մօր անունը Սիրանոյշ. ընկերոջ անունը՝ Միքայէլ Շահրազեան, Կարբեցի, հօր անունը Աբրահամ։

Իրենց մասին տեղեկութիւն եւ կամ հասցէները գիտցողներէն կը խնդրուի իմացնել «Յառաջ»ին, որ կը փոխանցէ։



---





---

ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՎԵՆԵՏԻԿ

●

1. 1960–61 ուսումնական տարեշրջանը պիտի սկսի Հոկտեմբեր 10ին։

2. Վերաքննութիւնները տեղի պիտի ունենան Հոկտեմբեր 3–8։

3. Արձակուրդի առթիւ, իրենց ծնողաց քով գացող վերաքննելի աշակերտները պէտք է որ Հոկտեմբեր 2ին վերադարձած ըլլան։

4. Աշակերտներէն ոչ ոք կրնայ Սեպտեմբեր 25էն առաջ, վարժարան ներկայանալ։

ՏԵՍՉՈՒԹԻՒՆ

---

ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՀԱՅ - ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221–222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած։ Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական վկայութիւններ մեր հայրենիքին նուիրուած։

Տարեկան բաժնեգինը 15 Նոր փրանք։ Արտասահման 20 Նոր փրանք։

ՀԱՅ–ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ–ԲՈՅԺի բարեկամ մըն է։ Սպասել որ նամակ գրուի՝ եւ բաժնեգին պահանջուի, կը նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին։ Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը։

---

Imprimerie Spéciale du journal « Haratch »

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ։

×

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

---

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՏԷՍԻՆ. – Տարօն-Տուրուբերան Հայր. Միութիւնը կը հրաւիրէ բոլոր հայրենակիցները եւ Տէսինի յարգոյ հայ հասարակութիւնը որ ներկայ ըլլան այս կիրակի առաւօտեան ժամը 8ին, Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ կատարուելիք պատարագին եւ հոգեհանգստեան պաշտօնին՝ ի յիշատակ մեր բիւրաւոր նահատակներուն որոնց ողեկոչումը պիտի ընէ Տէսինի նորընծայ Տէր Վարազ քհնյ. Աւագեան, որ նոր ժամանած է Երուսաղէմէն։

×

Վարդերեսեան ընտանիքը կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց հօր՝

ԱԳՐԻՊԱՍ ՎԱՐԴԵՐԵՍԵԱՆ

մահուան քառասունքին առթիւ այս կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

ՀԻՒԼԷԱԿԱՆ ուժով սարքուած ելեկտրականութիւնը եւ ջեռուցումը իրականութիւն դարձան Շուէտի մէջ։ Արդարեւ, Սթոքհոլմի արուարձաններէն մէկը՝ Աակեսթա հիւլէական ուժով ելեկտրականութիւն եւ ջեռուցում պիտի ստանայ, 1963ին։ Այս ուղղութեամբ կատարուած փորձերը յաջողութեամբ պսակուած են։

ԱՐԱԲ ՄԻԱՑԵԱԼ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ յատկացուած ամերիկեան վարկը, 195 միլիոն Նոր Ֆրանքի հասած է, 1959–60 տարեշրջանի ընթացքին։ Շնորհիւ այս օժանդակութեան, Թուղթի գործարան մը պիտի հիմնուի Աղեքսանդրիոյ մէջ, իսկ շաքարի գործարան մըն ալ Իտֆուի մէջ։ Ուրիշ ծրագիրներ ալ կարելի պիտի ըլլայ գլուխ հանել։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։

## Ա Ջ Դ

ՀԱՅ ԽՆԱՄԱՏԱՐՈՒՀԻԻ ՄԸ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ։

Կիւլպէնկեան հիմնարկութիւնը, Աղքատախնամ Ընկերակցութեան տրամադրութեան տակ դրած ըլլալով կէս միլիոնի գումար մը, հայ խնամատարուհիի մը (assistante sociale) պատրաստութեան ուսուցման թոշակին համար, թեկնածուներէն կը խնդրուի գրաւոր դիմել Աղքատախնամի դրասենեակը։

Պայմաններ.— Թեկնածուն պէտք է ըլլայ, 18 – 35 տարեկան եւ ունենայ պաքալորեայ (պաքալորէա) Ա. եւ Բ. վկայականները։

Ուսանողութեան շրջանն է երեք տարի։

Արձանագրութիւնները կ'ընդունուին մինչեւ Սեպտեմբեր 10, որմէ վերջ տեղի պիտի ունենայ յարմարագոյնին ընտրութիւնը։ Գրել.—

Association Arménienne d'Aide Sociale
« Bourse d'Etude C. Gulbenkian »
32, Rue de Trévise, PARIS (9e)

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՆՈՅԵՄԲԵՐ 13, ԿԷՍՕՐԷ ԵՏՔ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏ

Ազգային Բարերարին ծննդեան երկրորդ դարադարձ
եւ
Վարժարանին վերաբացման երեսնամեակ

Հանդիսաւոր Տօնակատարութիւն
Մանրամասնութիւնները յաջորդով։



ՀԱ ՄԱՆ ԱՐԱ ● HA MAN ARA

par

LES BARCLAY

super 70.335 45 T. simple 60.212

Discophiles Arméniens!

C'est une danse de chez vous
à la mode de chez nous.

EN VENTE PARTOUT

Գ. Աղեքսան Նուրեան եւ զաւակը՝ Վարուժան, Տէր եւ Տիկին Տիգրան Թորոսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Յովհաննէս Թորոսեան ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր, մեծ–մօր, խնամիին եւ ազգականին՝

## ԱՏՐԻՆԷ ՆՈՒՐԵԱՆԻ

(ծնեալ Խըտըշեան, Կիրասոնցի)

կսկծալի մահը որ տեղի ունեցաւ Օգոստոս 18ին, 53 տարեկանին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ժամը ճիշդ 16ին Փարիզի Ս. Յովհաննէս–Մկրտիչ եկեղեցիին մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փեռ–Լաշէզ, ամփոփուելու համար իր ընտանեկան դամբարանին մէջ։

ՈՉ ԾԱՂԻԿ, ՈՉ ԾԱՂԿԵՊՍԱԿ։

Փոխան ծաղկեպսակի նուէրները՝ հանրային կազմակերպութեանց։

Կը խնդրուի ներկայս իբրեւ մահազդ նկատել։

ԱՌՆՈՒՎԻԼԻ

ԱՆԱՐԱՏ ՅՂՈՒԹԵԱՆ ՔՈՅՐԵՐ

Իրենց հաստատութեան գիշերօթիկ աշակերտներու արձանագրութիւնը սկսած է։ Կ'ընդունին չորսէն 13 տարեկան աշակերտուհիներ, կը յաճախեն ֆրանսական դպրոցի դասընթացքներուն, եւ կը հետեւին հայերէնի ներքին ուսմունքներուն։

Մասնական տեղեկութիւններու համար դիմել տեսչութեան։

SŒURS ARMENIENNES
37, Ave. H. Barbusse - Arnouville les Gonesse (S & O)
Tel. : N° 179 à Gonesse

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1960 – 1961ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ պրրվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով։

Դիմել 1, Պուլվ. տիւ Նօր, Լը Րէնսի, Հեռ. 927·01·72։

ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱԻ

ԿԱՐՕ ԳԷՈՐԳԵԱՆԻ ՊԱՏՐԱՍՏԱԾ
եւ կուշտակուռ խնդացնող

"ԽԻՆԴ ՈՒ ԺՊԻՏ"

Երգիծական հատորը, 518 ընդարձակ էջերով եւ հարիւրաւոր սրամիտ պատմուածքներով, մանրավէպերով և ծաղրանկարներով, որոնց վեց հատը գունաւոր, ծանօթ ծաղրանկարիչ Տիրան Աճէմեանի գործերէն։

Գինը՝ 14 Ն. Ֆ. թղթակազմը եւ 16·50 Ն. Ֆ. լաթակազմը։

Ստանալ Հ. Սամուէլ, Մ. Պարսամեան եւ Հ. Բալուեան գրատուներէն։

ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ
Լը Փէք
Բացուած են արձանագրութիւնները
1960-1961
Ուսումնական տարեշրջանին համար։

Տասը տարեկանէն սկսեալ երկրորդական վարժարանի որեւէ դասարանի ուսանող աշակերտ կ'ընդունուի։ Ուսման ծրագիրն է դասական ընթացք (Բուր քըլասիք)։

Դպրոցական տարեկան թոշակն է 1·500 Ն. Ֆրանք։

ÉCOLE APOSTOLIQUE
3, Ave. de Grandchamp, LE PECQ (S. et O.)
Tél. ; 963-0172



ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼԵԱՆ ԳՐԱՏՈՒՆԸ

51, Rue Monsieur-le-Prince, PARIS (6e)

ԲԱՑ Է ՕԳՈՍՏՈՍ ԱՄՍՈՒԱՆ ԸՆԹԱՑՔԻՆ

ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՀԱՅ - ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221–222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած։ Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական վկայութիւններ մեր հայրենիքին նուիրուած։

Տարեկան բաժնեգինը 15 Նոր փրանք։ Արտասահման 20 Նոր փրանք։

ՀԱՅ–ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ–ԲՈՅԺի բարեկամ մըն է։ Սպասել որ նամակ գրուի՛ եւ բաժնեգին պահանջուի, կը նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին։ Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ։

×

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

նական միջոցներ գտնել»։

Փարիզ, ցարդ լուռ կը մնայ։ Ոչ մէկ պաշտօնական մեկնաբանութիւն տրուեցաւ։ Այսուհանդերձ, տեղական թերթերը գիտել կուտան, թէ կառավարութեան մօտիկ շրջանակները «փորձ» մը կը նկատեն էֆ. էլ. էն.ի վարիչներուն այս գեկոյցը։ Այսինքն, այս վերջինները կ'ուզեն գիտնալ Ֆրանսայի տեսակէտը եւ հակազդեցութիւնը։ «Ֆրանսայի դիրքը յստակօրէն ճշդուած է զօրավար տը Կոլի կողմէ. ոչինչ կայ աւելցնելիք» գիտել կուտան Ֆրանսական շրջանակները։

Թունուզի նախագահը՝ Պուրկիպա եւ «Ալժ. կառավարութեան» վարչապետը՝ Ֆերհաթ Ապպաս գլուխ գլխի տեսակցութիւն մը ունեցան Սքանեզի մէջ։ Իրենց խօսակցութեան բնոյթը անծանօթ է սակայն։

Կը թուի թէ Պուրկիպա համակարծիք է Ապպասի։

Եազիտ «Ալժ. կառավարութեան» տեղեկատուութեան նախարարը», իր կառավարութեան տեսակէտը բացատրած է Նուեայօրք Փրէսի թղթակիցին.— «Ալժերիոյ հարցը նոր փուլի մէջ մտաւ։

«Ֆրանսայի և Ալժերիոյ միջեւ բանակցութիւններով կարելի չէ այլեւս լուծել Ալժերիոյ հարցը։ Միջազգայնացումը անհրաժեշտութիւն դարձաւ»։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի Վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ ողբացեալ Նշան Ալթըփարմաքեանի մահուան առիթով փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է՝ Պ. Պ. Կարապետ Սէմիրճեանէ 50 Ն. Ֆ., Միսաք Եմենիճեանէ 10 եւ Ժիւլ Փակտոյէ 5 Ն. Ֆ.։

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Վահագն Վարդանեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր հօրը՝ Հրաչ Վարդանեանի (Լիոն)։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տիկին Զաքարեան 10ական Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան եւ Շ. Միսաքեան սրահներուն, իսկ իր տղան, իր առաջին աշխատավարձէն՝ 10 Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման։



### Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ
### ՄԵՌԵԼՈՑԻՆ ԱՌԹԻՒ

Տիկին Եղիսաբէթ Տէր-Ղուկասեան իր ննջեցեալ հարազատներուն յիշատակին 10 Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Հ. կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին։

×

Օր. Արմենուհի իր ողբացեալ մօր յիշատակին 10 Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Հ. Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին։

## ԱԶԴ

### ՀԱՅ ԽՆԱՄԱՏԱՐՈՒՀԻԻ ՄԸ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ ։

Կիւլպէնկեան հիմնարկութիւնը, Աղքատախնամ Ընկերակցութեան տրամադրութեան տակ դրած ըլլալով կէս միլիոնի գումար մը, հայ խնամատարուհիի մը (ասիսթանթ սօսիալ) պատրաստութեան ուսուցման թոշակին համար, թեկնածուներէն կը խնդրուի գրաւոր դիմել Աղքատախնամի գրասենեակը ։

Պայմաններ.— Թեկնածուն պէտք է ըլլայ, 18 – 35 տարեկան եւ ունենայ պաքալօրէ (պաքալօրէա) Ա. եւ Բ. վկայականները։

Ուսանողութեան շրջանն է երեք տարի։

Արձանագրութիւնները կ'ընդունուին մինչեւ Սեպտեմբեր 10, որմէ վերջ տեղի պիտի ունենայ յարմարագոյնին ընտրութիւնը ։ Գրել.—

Association Arménienne d'Aide Sociale
« Bourse d'Etude C. Gulbenkian »
32, Rue de Trévise, PARIS (9°)

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Հայաստանէն Օրիորդ Շուշան Գէորգի Յովհաննէսեան կը փնտռէ իր եղբայրը Սմբատ Յովհաննէսեան, որդի Մուազոմցի ժամկոչ Գէորգի, մօր անունը Խաթուն իսկ միւս քրոջ անունը Հուբար։

Հայաստանէն Մաթէոս Մկրտիչ Վարդանեանը կը փնտռեն։ Ծնած է 1915ին Ակնի շրջանի Խարկով գիւղը։ Ամուսնացած, ունի երեք զաւակներ Ստեփան, Անգին եւ Ֆրոզա, կնոջ անունը Բուրաստան։ Իր հօր անունը Մկրտիչ իսկ մօր անունը Նախշուն որոնք իր ընտանեկան բոլոր անդամներու հետ ողջ եւ առողջ են։ Կը կարծուի թէ 1942ին ինք Փարիզի կամ Մարսէյլի շրջանը եկած եւ հաստատուած է։

Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Փարիզի եկեղեցւոյ Դիւանատունը, 15 Ռիւ Ժան Կուժոն, Փարիզ 8րդ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ ։



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾՆՈՒԻ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մանրամասն պայմաններուն համար դիմել վարչութեան։



### ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՀԱՅ - ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ
Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221-222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած։ Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական վկայութիւններ մեր հայրենիքին նուիրուած։

Տարեկան բաժնեգինը 15 Նոր փրանք։ Արտասահման 20 Նոր փրանք։

ՀԱՅ-ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ-ԲՈՅԺի բարեկամ մըն է։ Սպասել որ նամակ գրուի՝ եւ բաժնեգինը պահանջուի, կը նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին։ Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը։

### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1960 – 1961ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան ։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ պրըվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով ։

Դիմել 1, Պուլվ. տիւ Նօր, Լը Ռէնսի, Հեռ. 927.01.72 ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ։

×

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

## ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

Լը Փէք

Բացուած են արձանագրութիւնները

**1960-1961**

Ուսումնական տարեշրջանին համար։

Տասը տարեկանէն սկսեալ երկրորդական վարժարանի որեւէ դասարանի ուսանող աշակերտ կ'ընդունուի։ Ուսման ծրագիրն է դասական ընթացք (Քուր քըլասիք)։

Դպրոցական տարեկան թոշակն է 1.500 Ն. Ֆրանք։

ECOLE APOSTOLIQUE
3, Ave. de Grandchamp, LE PECQ (S. et O.)
Tél. ; 963-0172

Imprimerie Spéciale du journal « Haratch »

Հաւանական է որ ՄԱԿի զինուորներ, որոնք անդորրութիւնը ապահովելու համար Քաթանկա կը գտնուին, միջամտեն: Զոմպէ դիմած է ՄԱԿի որ փոխէ Մալիի զինուորները:

Քամինայի կայանը պործողութեան 8000 քիլմ. շրջապիծ մը ունի: Եօթը միլիառ պելժիական ֆրանք արժած է Պրիւսէլի կառավարութեան: Կայանին մէջ կը գտնուին 2000 զինուորներ, 600 մասնագէտներ եւ 15.000 պաշտօնեաններ: Միջազգային չափանիշով մեծ կայան մըն է:

Վերջին լուրերուն համաձայն, Լումումպա Քոնկոյի նահանգը գրաւելու համար զօրծնական միջոցներ ձեռք կ'առնէ:

Խրիմ Պելքասեմ, էֆ. էլ. էն.ի ներկայացուցիչը՝ Շթօրայի մէջ (Պէյրութ) գումարուող Արաբ արտաքին նախարարներու ժողովին, մամուլի ասուլիսի մը ընթացքին բացատրեց իր «կառավարութեան» նպատակները.—

1) Դիւանագիտական աշխատանք Ափրիկէի, Ասիոյ, Լատին և Արաբ երկիրներուն մօտ, որպէսզի ՄԱԿի հսկողութեան տակ հանրաքուէի ի նպաստ քուէարկեն, Ապահովութեան Խորհուրդի յառաջիկայ նիստին: 2) Ֆրանսա պոյքոթի ենթարկուի արաբ երկիրներու կողմէ; 3) Արաբ կամաւորներ ղրկուին Ալժերիա:

Արաբ արտաքին Նախարարները քննութեան պիտի առնեն Պելքասեմի առաջարկները: Այս վերջինը Թունուզ վերադարձած է:

Մոսկուայի ձայնասփիւռը մեկնաբանելով «Ալժ կառավարութեան» նոր առաջարկը, հանրաքուէի մասին, յայտարարեց — «Ալժերիոյ հարցը դարձած է բացառաբար Ֆրանսան չահագրգռող հարց մը ըլլալէ»: Այս առթիւ խօսնակը՝ ձաղկեց Ֆրանսայի Ալժերիոյ քաղաքականութիւնը:

ՃՇԴՈՒՄ — Կապոյտ Խաչի պատգամաւորական ժողովի ընթացքին, ի նպաստ օգափոխութեան կայանի շէնքին եղած նուիրատուութիւններու ցանկին մէջ, Սիսլեան 100 Ն. Ֆ. կարդալ՝ Կապ. Խաչի Կրընոպլի մասնաճիւղ 100 Ն. Ֆ.:

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԵՐԻԻ ՄԷՋ

Հայ Ազգ. Միութեան եւ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանեն թէ այս կիրակի առաւօտ Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ պիտի պատարագէ Երուսաղէմ ձեռնադրուած, Տէսինի հոգեւոր հովիւ Տէր Վարազ քհնյ. Աւագեան, դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի:

## ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԵԼԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ՎԵՆԵՏԻԿ

1. 1960–61 ուսումնական տարեշրջանը պիտի սկսի Հոկտեմբեր 10ին:

2. Վերաքննութիւնները տեղի պիտի ունենան Հոկտեմբեր 3–8:

3. Արձակուրդի առթիւ, իրենց ծնողաց քով գացող վերաքննելի աշակերտները պէտք է որ Հոկտեմբեր 2ին վերադարձած ըլլան:

4. Աշակերտներէն ոչ ոք կրնայ Սեպտեմբեր 25էն առաջ, վարժարան ներկայանալ:

ՏԵՍՉՈՒԹԻՒՆ



## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի Վարչութիւնը կը խնդրէ ծուխերէն որ՝ մկրտութեան, պսակի, յուղարկաւորութեան եւ մասնաւոր հոգեհանգիստի արարողութիւններու համար հաճին կանխապէս դիմել քարտուղարութեան, անձամբ կամ հեռախօսով, օր եւ ժամ որոշելու համար, եւ կարգադրուած ժամադրութիւնը ճշդապահօրէն յարգելու չթերանալ: Անակնկալ կերպով ուզուած արարողութիւններու եւ չյարգուած ժամադրութիւններու պատճառած անկոյծ կնճիռներուն պատասխանատուութիւնը եկեղեցին կը ցաւի որ չի կրնար ստանձնել: Հեռախօս 77.84.70:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

- Տիկին Աւրինէ Նուրեանի (ծնեալ Խրտրչեան) կսկծալի մահուան առթիւ, Փոն տը Շէրիւէն Յովհաննէս Պիչաքճեան ընտանիքը խոր ցաւակցութիւններ կը յայտնէ Պ. Ալեքսան Նուրեանի եւ Տէր եւ Տիկին Տիգրան եւ Յովհաննէս Թորոսեանի:

## ՆՈՒԷՐ

Տիկին Սօսէ Թաթուլեան, իր հայրենակից Աբրահամ Սաֆարեանի աղուն՝ Դանիէլի արկածալի մահուան առթիւ 20 Ն. Ֆ. կը նուիրէ Սողոմոն Թէհլիրեան արահին եւ 10 Ն. Ֆ. «Յառաջ»ին:

(Ստանալ «Յառաջ»էն):

## ԱԶԴ
### ՀԱՅ ԽՆԱՄԱՏԱՐՈՒՀԻԻ ՄԸ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ:

Կիւլպէնկեան հիմնարկութիւնը, Աղքատախնամ Ընկերակցութեան տրամադրութեան տակ դրած ըլլալով կէս միլիոնի գումար մը, հայ խնամատարուհիի մը (ասիսթանթ սոսիալ) պատրաստութեան ուսուցման թոշակին համար, թեկնածուներէն կը խնդրուի գրաւոր դիմել Աղքատախնամի գրասենեակը:

Պայմաններ — Թեկնածուն պէտք է ըլլայ, 18 – 35 տարեկան եւ ունենայ պաքալորեայ (պաքալորէա) Ա. եւ Բ. վկայականները:

Ուսանողութեան շրջանն է երեք տարի:

Արձանագրութիւնները կ'ընդունուին մինչեւ Սեպտեմբեր 10, որմէ վերջ տեղի պիտի ունենայ յարմարագոյնին ընտրութիւնը: Գրել.—

Association Arménienne d'Aide Sociale
« Bourse d'Etude C. Gulbenkian »
32, Rue de Trévise, PARIS (9e)







ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՀԱՅ - ԲՈՅԺ

*

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ
խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221–222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած: Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական վկայութիւններ մեր հայրենիքին նուիրուած:

Տարեկան բաժնեգինը 15 Նոր փրանք: Արտասահման 20 Նոր փրանք:

ՀԱՅ–ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ–ԲՈՅԺի բարեկամ մըն է: Սպասել որ նամակ գրուի՝ եւ բաժնեգին պահանջուի, կը նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին: Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը:

## ԴԻՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

*

1960 – 1961ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են: Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան:

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ պրըվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով:

Դիմել 1, Պուլվ. տիւ Նոր, Լը Րէնսի, Հեռ. 927.01.72:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

●

Հայաստանէն Օրիորդ Շուշան Գէորգի Յովհաննէսեան կը փնտռէ իր եղբայրը Սմբատ Յովհաննէսեան, որդի Մոազումցի ժամկոչ Գէորգի, մօր անունը Խաթուն իսկ միւս քրոջ անունը Հուրբար:

Հայաստանէն Մաթէոս Մկրտիչ Վարդանեանը կը փնտռէ: Ծնած է 1915ին Աղինի շրջանի Խարկով գիւղը: Ամուսնացած, ունի երեք զաւակներ Սահփան, Անգին եւ Ֆրոզա, կնոջ անունը Բուրաստան: Իր հօր անունը Մկրտիչ իսկ մօր անունը Նախշուն որոնք իր ընտանեկան բոլոր անդամներու հետ ողջ եւ առողջ են: Կը կարծուի թէ 1942ին ինք Փարիզի կամ Մարսէյլի շրջանը եկած եւ հաստատուած է:

Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Փարիզի եկեղեցւոյ Դիւանատունը, 15 Ռիւ Ժան Կուժոն, Փարիզ 8րդ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ:

×

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ:

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ:

Լումումպայի դէմ են։

Լէոփոլտվիլի կառավարութեան Քոնկոյի (Լումումպայի) զինուորները սկսած են Քաթանկայի վրայ քալել։ Ինչպէս գրած էինք, Քաթանկա անկախութիւն հռչակած էր, բաժնուելով կեդրոնի կառավարութենէն։

Քոնկոյի երկրին ծանօթ անձերու կարծիքով, Լումումպայի զինուորները մեծ դժուարութիւններու պիտի հանդիպին, Քաթանկայի մէջ, որ Ֆրանսայի տարածութիւնն ունի։ Ստիպուած պիտի ըլլան կոյս անտառներէ անցնիլ ու ամէն քայլափոխին վայրի կենդանիներու եւ թունաւոր նետերու թիրախ պիտի դառնան։

Կ'ըսուի թէ ՄԱԿի ուժեր կ'օժանդակեն Լումումպայի։

ՄԱԿի շրջանակները հաշիւ ըրած են, թէ 750 միլիոն Նոր Ֆրանք պիտի արժէ Քոնկոյի տրուած նպաստը, տնտեսական եւ զինուորական։

×

Տաքարի մէջ (Սենեկալ) կացութիւնը հանդարտ է։ Մամատու Տիա, Սենեկալի վարչապետը որ Փարիզ կը գտնուէր քանի մը օր առաջ, այժմ կ'աշխատի հաստատուած իրականութիւն դարձնել Սենեկալի անկախութիւնը։ Այս իմաստով օրէնսդրական մարմինը նոր սահմանադրութիւն մը կը մշակէ։ Բայց թեքնիք դժուարութիւններ կան։ Մոտիպօ Քայթա, Սուտանի վարչապետը, որ դէմ է Մալիի բաժանումին, մամուլի ասուլիս մը տուաւ, առջի օր։ Կ'ամբաստանէ Տաքարի եւ Փարիզի Ֆրանսական իշխանութիւնները, իբրեւ կազմակերպիչ անջատումի շարժումին։ Ըստ իրեն, Ֆրանսան է որ դրդեց Սենեկալցիները որպէսզի անջատուին եւ անկախութիւն հռչակեն։ Իր ամբողջ ճառի ընթացքին, Սուտանի վարչապետը չնշեց բազմաթիւ անդամներ, թէ Մալի գոյութիւն ունի եւ բաժանումը անկարելի բան մըն է։ Դիմում կատարած է ՄԱԿի, որպէսզի «կապոյտ սաղաւարտ»ներ ղրկուին, այլ խօսքով՝ միջազգային զինուորներ դարձնել Մալիի տարածքին։ Նիւ–Եորքէն կը հաղորդեն, թէ նման դիմումէ մը լուր չունին։

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Ս Ե Ւ Ր

—

1960-1961

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՄՈՒՏՔԸ՝

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 19 ՍԵՊՏ. ԿԷՍՕՐԷ ԵՏՔ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։



ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցւոյ մէջ պիտի պատարագէ եւ քարոզէ Միացեալ Նահանգներէն հիւրաբար Փարիզ գտնուող

ՏԷՐ ԱՌՆԱԿ ՔՀՆՅ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

Լը Փէք

Բացուած են արձանագրութիւնները

1960-1961

Ուսումնական տարեշրջանին համար։

Տասը տարեկանէն սկսեալ երկրորդական վարժարանի որեւէ դասարանի ուսանող աշակերտ կ'ընդունուի։ Ուսման ծրագիրն է դասական ընթացք (Քուր քլասիք)։

Դպրոցական տարեկան թոշակն է 1.500 Ն. Ֆրանք։

ÉCOLE APOSTOLIQUE
3, Ave. de Grandchamp, LE PECQ (S. et O.)
Tél. ; 963-0172





Imprimerie Spéciale du journal « Haratch »





ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։

ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ։ ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ։

Ա Զ Դ

ՀԱՅ ԽՆԱՄԱՏԱՐՈՒՀԻԻ ՄԸ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ։

Կիւլպէնկեան հիմնարկութիւնը, Աղքատախնամ Ընկերակցութեան տրամադրութեան տակ դրած ըլլալով կէս միլիոնի գումար մը, հայ խնամատարուհիի մը (ասիսթանթ սոսիալ) պատրաստութեան ուսուցման թոշակին համար, թեկնածուներէն կը խնդրուի գրաւոր դիմել Աղքատախնամի գրասենեակը։

Պայմաններ.— Թեկնածուն պէտք է ըլլայ, 18 – 35 տարեկան եւ ունենայ պաքալորէա Ա. եւ Բ. վկայականները։

Ուսանողութեան շրջանն է երեք տարի։

Արձանագրութիւնները կ'ընդունուին մինչեւ Սեպտեմբեր 10, որմէ վերջ տեղի պիտի ունենայ յարմարագոյնին ընտրութիւնը։ Գրել.—

Association Arménienne d'Aide Sociale
« Bourse d'Etude C. Gulbenkian »
32, Rue de Trévise, PARIS (9e)



ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

ՀԱՅ - ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221–222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած։ Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական վկայութիւններ մեր հայրենիքին նուիրուած։

Տարեկան բաժնեգինը 15 Նոր ֆրանք։ Արտասահման 20 Նոր ֆրանք։

ՀԱՅ-ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ-ԲՈՅԺի բարեկամ մըն է։ Սպասել որ համոզուի՞ եւ բաժնեգին պահանջուի, կը նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին։ Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը։

ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՎԵՆԵՏԻԿ

1. 1960–61 ուսումնական տարեշրջանը պիտի սկսի Հոկտեմբեր 10ին։

2. Վերաքննութիւնները տեղի պիտի ունենան Հոկտեմբեր 3–8։

3. Արձակուրդի առթիւ, իրենց ծնողաց քով գացող վերաքննելի աշակերտները պէտք է որ Հոկտեմբեր 2ին վերադարձած ըլլան։

4. Աշակերտներէն ոչ ոք կրնայ Սեպտեմբեր 25էն առաջ, վարժարան ներկայանալ։

ՏԵՍՉՈՒԹԻՒՆ

Քոնկոյէն հասած վերջին լուրերուն համաձայն, Նասր տրամադիր է ՄԱԿի դրօշին տակ գտնուող եգիպտացի վաշտերը Լումումպայի տրամադրութեան ներքեւ դնելու: Վաշտերը Քամինա պիտի մեկնին, այսինքն Քաթանկայի սիրտը:

Քոնկոյի պելժ ուժերու ընդհ. հրամանատարը՝ զօրավար Զէյլընգ, յայտարարեց, թէ մինչեւ ամսու վերջ պելժ ուժերը մեկնած պիտի ըլլան երկրէն: Այս առթիւ աւելցուցած է — «Կատարեալ յիմարութիւն է...»:

Քասայ եւ Քաթանկա միացեալ զեկոյցով մը հաղորդեցին — «Օգոստոս 25ին սկզբնական դաշնակցութեան մը հաստատման շուրջ պայմանագրութիւն մը ստորագրուեցաւ Քաթանկայի եւ Քասայի հանրապետութիւններուն միջեւ»: Պայմանագրութիւնը ստորագրած են երկու նախագահները՝ Չոմպէ եւ Քալոնճի:

Համաձայնութիւնը կը նախատեսէ՝ հասարակաց պաշտպանութիւն, ինչպէս նաեւ հաստատում՝ տնտեսական սերտ գործակցութեան: Երկու նահանգներուն միջեւ վերջ կը դրուի մաքսային դրութեան:

Ինչ կը վերաբերի Լումումպայի սպառնալիքին, Չոմպէ յայտարարեց — «Երբեք ամիսէն, երբ զինուորները մարզուին, ոչ մէկ յարձակումէ պիտի վախնանք»: Ալպերվիլի եւ Էլիզապէթվիլի մէջ, Չոմպէ մաքրագործումներ կը կատարէ: Կը ձերբակալէ կամ կը զինաթափէ Լումումպայի կողմնակիցները:

×

Համըրշոլտ, ՄԱԿի ընդհ. քարտուղարը, տեղեկագիր մը առաւ Սուտանի վարչապետ Մօտիպօ Քայթայէն: Այս վերջինը «կապոյտ սաղաւարտ»ներ կը պահանջէ Մալիի համար, ինչպէս նաեւ Ապահովութեան Խորհուրդի գումարումը:

ՄԱԿի շրջանակները դիտել կուտան թէ ոչ-անդամ պետութիւն մը չի կրնար Ապահովութեան Խորհուրդի գումարում պահանջել, ի բաց առեալ, եթէ, ընդունի գործադրել եւ հնազանդիլ Ապահովութեան Խորհուրդի տալիք որոշումները:

Մամատու Տիա, Սենեկալի վարչապետը, «ծիծաղելի» գտած է Սուտանի վարչապետին այս դիմումը:

×

ԽԱԶԻԿ ՊԱՊԻԿԵԱՆԻ նախարար նշանակուելուն առթիւ, Մարսէյլի Լը Փրովանսալ «Մարսէյլցիի մը եղբօրորդին նախարար» խորագրին տակ իր ուրախութիւնը կը յայտնէ եւ կը շնորհաւորէ՝ ընկեր Յակոբ Պապիկեանը:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Ալեքսան Նուրեան եւ զաւակը Վարուժան, Տէր եւ Տիկին Տիգրան Թորոսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Յովհաննէս Թորոսեան եւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց կնոջ, մօր, մեծ-մօր եւ ազգականին՝

ԱՏՐԻՆԷ ՆՈՒՐԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ:

Այս առթիւ կը յիշեցնենք թէ անհատական ոչ մէկ մահազդ ղրկուած էր:

×

Կապ. Խաչի Վիէնի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ալթուն Նաճարեանէ, իրենց զաւկին արկածէ ազատուելու առթիւ, 20 Ն. Փրանք: Մասնաճիւղը կատարեալ ապաքինում կը մաղթէ:

×

Այրի Տիկին Խաչեր Կարապետեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԽԱԶԵՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Միլանոյէն ճարտարապետ Արման Սարեան 50 Ն. Ֆ. կը նուիրէ Սողոմոն Թէհլիրեան որահին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տիկին Վ. Թ. Զարզարեան, իր քրոջ՝ Տիկին Էլմասեանի յիշատակին 50 Ն. Ֆ. կը նուիրէ Դպրոցասէր Տիկնանց վարժարանին եւ 50 Ն. Ֆ. Մոնմորանսիի հանգստեան տան: (Ստանալ «Յառաջ»էն):

×

Ֆրանսահայ Կապոյտ Խաչը իր օդափոխութեան կայանին համար շնորհակալութեամբ ստացած է 10 Ն. Ֆ. Տէր եւ Տիկին Պետրոս Զպուքճեանէ Ատրինէ Նուրեանի կսկծալի մահուան առթիւ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք:

×

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ:



ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՍԵՒՐ

—

1960-1961

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՄՈՒՏՔԸ՝
ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ
ԺԱՄԸ 9ԷՆ 18

## ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՎԵՆԵՏԻԿ

1. 1960–61 ուսումնական տարեշրջանը պիտի սկսի Հոկտեմբեր 10ին:

2. Վերաքննութիւնները տեղի պիտի ունենան Հոկտեմբեր 3–8:

3. Արձակուրդի առթիւ, իրենց ծնողաց քով գացող վերաքննելի աշակերտները պէտք է որ Հոկտեմբեր 2ին վերադարձած ըլլան:

4. Աշակերտներէն ոչ ոք կրնայ Սեպտեմբեր 25էն առաջ, վարժարան ներկայանալ:

ՏԵՍՉՈՒԹԻՒՆ





ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ:

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ: ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ:

### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

*

1960 – 1961ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են: Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան:

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ պրըվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով:

Դիմել 1, Պուլվ. տիւ Նոր, Լը Րէնսի, Հեռ. 927-01-72:

ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՀԱՅ - ԲՈՅԺ

*

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ
խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221–222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած: Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական վկայութիւններ մեր հայրենիքին նուիրուած:

Տարեկան բաժնեգինը 15 Նոր Փրանք:
Արտասահման 20 Նոր Փրանք:

ՀԱՅ-ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ-ԲՈՅԺի բարեկամ մըն է: Սպասել որ նամակ գրուի՝ եւ բաժնեգին պահանջուի, կը նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին: Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը:

### ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցւոյ մէջ պիտի պատարագէ եւ քարոզէ Միացեալ Նահանգներէն հիւրաբար Փարիզ գտնուող

ՏԷՐ ԱՌՆԱԿ ՔՀՆՅ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

կալած են։ Ձերբակալուածները՝ մէկ Ֆրանսացի, երկու Անգլիացի եւ եօթը Քանատացի մասնագէտներ, ազատուած են շնորհիւ Հայէշ զինուորներու միջամտութեան։ Երկու հոգի վիրաւորուած են։

Լումումպա Սթանլէյվիլ ընդունուած է «հերոս»ի պէս։

Քաղայ գտնուող Լումումպայի զինուորները յաջողեցան Հանքային Նահանգի մայրաքաղաքը՝ Պաքուանգա գրաւել, առանց դոյզն ընդդիմութեան հանդիպելու։ Քաղայի նախագահը՝ Քալոնճի Էլիզապէթվիլ մեկնած է։ Այս վերջինը Էլիզապէթվիլի մէջ կոչ ուղղեց Ֆրանսայի, Անգլիոյ, Մ. Նահանգներու եւ նախկին Ֆրանսական Ափրիկէի բոլոր երկիրներուն, որպէսզի օգնեն «Լումումպայի դէմ իրենց մղած պայքարին մէջ»։ Այս առթիւ ամբաստանեց Քաղայ գտնուող ՄԱԿի Թունուզցիները, որ Լումումպայի զինուորներուն օգնած են։ ՄԱԿի բանբերը հերքեց։

Վերջին լուրերուն համաձայն ընդհարումներ տեղի ունեցած են Քոնկոյի եւ Քաթանկայի զինուորներուն միջեւ։

Աւելի քան երբեք մտահոգիչ է կացութիւնը։

---

ԿԻՒՐՍԷԼ ժամուլի ասուլիս մը տուաւ եւ այս առթիւ յայտարարեց թէ Սահմանադրութիւնը հանրաքուէի պիտի ենթարկուի յառաջիկայ գարնան։ Ընտրութիւնները տեղի պիտի ունենան 1961 Մայիս 27ին (յեղափոխութեան տարեդարձին օրը)։ Ամէն պարագայի մէջ, աշունէն առաջ որպէսզի երեսփոխանական ժողովի առաջին նիստը բացուի Հոկտ. 29ին Թրքական ազգային տօնին օրը։ Կիւրսէլ ճշդած է նաեւ թէ կուսակցութիւնները պիտի կարենան մասնակցիլ բացի դեմոկրատներէն։

ՊԱՂՏԱՏԻ զինուորական վարժարանին մէջ 20 տեղ պատրաստուած է ալժերացի ուսանողներու համար, յայտարարած է «Ալժ. Առժ. կառավարութեան» Իրաքի ներկայացուցիչը՝ Բուժալգիա։

ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԻՒՆԸ և Արաբ Միացեալ Հանրապետութիւնը տնտեսական համաձայնութիւն կնքեցին։ Խորհ. Միութիւն 900 միլիոն ռուբլիի նպաստ մը պիտի ընէ Ասուանի ջրամբարին համար։ Նախապէս 400 միլիոն ռուբլի տուած էր, միշտ նոյն նպատակին համար։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՆՈՅԵՄԲԵՐ 13, ԿԷՍՕՐԷ ԵՏՔ**

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏ**

Ազգային Բարերարին ծննդեան երկրորդ դարադարձ

եւ

Վարժարանին վերաբացման երեսնամեակ

Հանդիսաւոր Տօնակատարութիւն

*Մանրամասնութիւնները յաջորդով։*

## ԱԶԴ

### ՀԱՅ ԽՆԱՄԱՏԱՐՈՒՀԻԻ ՄԸ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ ։

Կիւլպէնկեան հիմնարկութիւնը, Աղքատախնամ Ընկերակցութեան տրամադրութեան տակ դրած ըլլալով կէս միլիոնի գումար մը, հայ խնամատարուհիի մը (ասիսթանթ սոսիալ) պատրաստութեան ուսուցման թոշակին համար, թեկնածուներէն կը խնդրուի գրաւոր դիմել Աղքատախնամի գրասենեակը։

Պայմաններ.— Թեկնածուն պէտք է ըլլայ, 18 – 35 տարեկան եւ ունենայ պաքալորի (պաքալորէա) Ա. եւ Բ. վկայականները։

Ուսանողութեան շրջանն է երեք տարի։ Արձանագրութիւնները կ'ընդունուին մինչեւ Սեպտեմբեր 10, որմէ վերջ տեղի պիտի ունենայ յարմարագոյնին ընտրութիւնը։ Գրել.—

Association Arménienne d'Aide Sociale
« Bourse d'Etude C. Gulbenkian »
32, Rue de Trévise, PARIS (9e)



### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆԻ ՎԵՐԱԴԱՐՁ

Փարիզի պզտիկներուն խումբը կառքով Լիոն կը հասնի Սեպտեմբեր 4ի առաւօտը ժամը 6,30ին։ Լիոնի խումբը կը հասնի Փէռաշի կայարանը Սեպտ. 5ի առաւօտը ժամը 9ին։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Կեդր. Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Գ. Կիւլպէնկեան հաստատութենէն 392.000 Հ.Ֆ. իբրեւ մասնակցութիւն Պելֆոնթէնի օդափոխութեան կայանի շէնքին կեդր. ջեռուցիչի զետեղման։

Այս յատկացումով Միութիւնս հնարաւորութիւն ունեցաւ իր ձրի պզտիկներէն բացի, տասը ուրիշ ձրիներ ընդունելու 1960ի համար։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

×

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »





### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ։ ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ։

### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1960 – 1961ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել հաստատութեան տնօրէնութեան։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրի աշակերտուհիները կը պատրաստէ պրըվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնքի ծանօթութիւններով։

Դիմել 1, Պուլվ. տիւ Նօր, Լը Րէնսի, Հեռ. 927.01.72։

### ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

Լը Փէք

Բացուած են արձանագրութիւնները

**1960-1961**

Ուսումնական տարեշրջանին համար։

Տասը տարեկանէն սկսեալ երկրորդական վարժարանի որեւէ դասարանի ուսանող աշակերտ կ'ընդունուի։ Ուսման ծրագիրն է դասական ընթացք (Քուր քլասիք)։

Դպրոցական տարեկան թոշակն է 1.500 Ն. Ֆրանք։

ECOLE APOSTOLIQUE
3, Ave. de Grandchamp, LE PECQ (S. et O.)
Tél.; 963-0172

### « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Տէր եւ Տիկին Ինճէեան մէկ տարեկան Յառաջ կը նուիրեն Տիկին Մ. Թահթաեանի (Մարսէյլ)։



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, Կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք։

×

ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ։

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ**

ՍԵՒՐ

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՄՈՒՏՔԸ՝
ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ
ԺԱՄԸ 8էն 18

